# ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ

№ 9 ● 1984

Լույս է տեսնում 1923 թվականից



Շապիկի առաջին էջին՝
Մայիսյան ապստամբության
հերոսներին նվիրված հուշակոթողը
Լենինականում
Գործ՝ ԱՐԱ ՍԱՐԳՍՅԱՆԻ

1924 թ. հունվարին, երբ սովետական ողջ ժողովուրդն ու համայն աշխարհի աշխատավորությունը սգում էր մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինի մահը, Հայկական ՍՍՀ-ի Ալեքսանդրապոլ քաղաքի աշխատավորության խնդրանքով Ալեքսանդրապոլը վերանվանվեց առաջնորդի անունով՝ ԼԵՆԻՆԱԿԱՆ:

Լենինական քաղաքը պարգևատրվել է ժողովուրդների բարեկամության շքանշանով, հեղափոխական շարժմանը մատուցած ծառայությունների, Հայրենական մեծ պատերազմում տարած հաղթանակի մեջ ներդրած ավանդի, տնտեսական և կուլտուրական շինարարության ասպարեզում ձեռք բերած հաջողությունների համար:



# Ամեն ինչ ձեզ համար

Լրացավ մեր քաղաքը մեծ առաջնորդի՝ Վ. Ի. Լենինի անունով կոչելու 60-ամյակը: Այդ տարելիցը արժանավայել գործերով դիմավորեցին նաև քաղաքի պիոներ-դպրոցականները:

Հավատարիմ մնալով իրենց ավագների հեղափոխական, մարտական ու աշխատանքային ավանդույթներին, լենինականցի կարմիր վզկապավորները հանդես են գալիս նոր շարժումներով ու նախաձեռնություններով, դարձել են բազմաթիվ հայրենանվեր գործերի հեղինակներ:

Քաղաքում ծնունդ են առել «Բանվորական օրվան՝ պիոներական ժամեր», «Բանվորական օրվան՝ որակյալ արտադրանք», «Դպրոցական դասաժամին՝ գերազանց գնահատական», «Ուրենգոյին՝ լենինականյան խողովակներ», «Կումայրի ճարտարապետական արգելոցին՝ պիոներական հոգատարություն» և այլ շարժումներ, որոնք լայն արձագանք են գտել ոչ միայն քաղաքի, այլև հանրապետության պիոներների շրջանում:

Ինչպես Միության բոլոր պիոներական կոլեկտիվներին, այնպես էլ մեր քաղաքային պիոներական կազմակերպությանը նոր աշխուժություն բերեց պատանի լենինյանների համամիութենական նոր երթը: Քայլելով երթի երթուղիներով, նրանք իրենց խոսքի ու գործի միասնությունը ապացուցում են բազմաթիվ ուշագրավ գործերով:

Այսօր դժվար է Լենինականի պիոներական կազմակերպության գործունեությունը պատկերացնել առանց աշակերտական արտադրական բրիգադների: Հազարավոր պիոներներ են մասնակցում ամառային աշխատանքային քառորդին: Մեր դպրոցականների որոշակի մասը իր աշխատանքային քառորդն անցկացնում է տեքստիլ կոմբինատում, այն կոլեկտիվում, որն այսօր տեղական կադրերի մեծ կարիք ունի:

Մեր քաղաքի պատանի լենինյանները մեծ ակտիվությամբ են մասնակցում համամիութենական և հանրապետական մյուս օպերացիաներին ու ակցիաներին: Առանձնակի աշխուժությամբ են գործում «Թիմուրական» և «Կարմիր հետախույզների» ջոկատները:

Պատանի թիմուրականները և Կարմիր հետախույզները, մասնակցելով հաղթանակի 40-ամյակին նվիրված «Մեծ հայրենականի տարեգրություն» որոնողական արշավին, ուսումնասիրում են պատերազմին մասնակցած լենինականցիների կյանքը, հավաքում են նրանց նվիրված նյութեր ու փաստաթղթեր, գրի են առնում և ձայնագրում վետերանների հուշերը:

Թիմուրականները մեծ հոգատարությամբ են շրջապատել Մեծ հայրենականում զոհված մարտիկների ընտանիքներին, վերցրել են նրանց նվիրված հուշահամալիրի և եղբայրական գերեզմանի շեֆությունը:

Լենինականը իրավամբ համարվում է նաև մարզական քաղաք:

Երեխաների շրջանում մեծ մասսայականություն է վայելում «Կաշվե գնդակ», «Ոսկե տափօղակ», «Հրաշք շաշկի», «Սպիտակ նավակ», «Արծաթե կարթ», «Հուսո մեկնարկներ» մրցումների անցկացումը, որոնցում յուրաքանչյուր տարի ընդգրկվում են շուրջ 10 հազար պիոներ-դպրոցականներ:

Քաղաքային պիոներական կազմակերպության լավագույն գործերն ու նախաձեռնությունները մշտապես արժանացել են կուսակցության քաղաքային կոմիտեի ուշադրությանը: Վերջին տարիներին քաղաքում շարք են մտել այնպիսի մանկական օբյեկտներ, ինչպիսիք են մանկական պատկերասրահը (որն այսօր հանդիսանում է Շիրակի դաշտավայրի երեխաների գեղագիտական դաստիարակության կենտրոն), մանկական երկաթուղին, մանկական դղյակը, պիոներների պալատի նոր շենքը, մանկական սրճարանը, «Մանկական աշխարհ» հանրախանութը:

Քաղաքի պիոներ-դպրոցականների համար ամենամեծ նվերը լինելու է քաղաքի արևմըտյան զանգվածում գտնվող հնագույն զբոսավայրերից մեկում՝ Չերքեզի Ձորում պիոներական «Փոքրիկ քաղաքի» ստեղծումը: Այստեղ մի քանի հեկտար տարածության վրա նախատեսված է կառուցել բազմաթիվ խաղահրապարակներ, մանկական կինոթատրոն, պիոներական ակտիվի ուսուցման դպրոց, սպորտային համալիր, դպրոցականների ազատ ժամանցի կազմակերպման այլ հետաքրքիր օջախներ: «Փոքրիկ քաղաքի» մեջ կըմտնի նաև այսօրվա լենինականյան ճամբարային գոտին՝ Վարդբաղը իր մի քանի ճամբարներով:

Լենինականցի պատանի լենինյանները իրենց հանգստի կազմակերպման լավագույն օջախներն ունեն նաև միկրոշրջաններում: Քաղաքում գործում են 12 մանկական սենյակ, 53 խաղահրապարակ:

Կուսակցության հոգատարության վառ դըրսևորումներից է և այն, որ օրեցօր թե՛ քանակապես և թե՛ որակապես կատարելագործվում է արտադպրոցական մանկական հիմնարկների գործունեությունը: Լենինականն այսօր ունի ժամանակակից բոլոր հարմարություններով օժտված պիոներների պալատ, պատանի տեխնիկների և բնասերների կայաններ, պատանի տուրիստների բազա, 7 երաժշտական, 30 մարզական դըպրոց:

ՍՄԿԿ Կենտկոմի «Հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի հիմնական ուղղությունները» նախագծում մեծ տեղ է հատկացված պիոներական կազմակերպությունների ինքնավարմանը, որպեսզի ամեն կերպ բարձրացվի պիոներական կազմակերպության դերն ու հեղինակությունը աշակերտների գաղափարաքաղաքական դաստիարակության գործում, վերացվի ձևամոլությունը, մանր խնամակալությունը պիոներական կազմակերպության ղեկավարման գործում:

Քաղաքային կոմիտեն անում է ամեն ինչ պիոներական կոլեկտիվների պատասխանատվությունը բարձրացնելու, նրանց համախըմբվածությունն ամրապնդելու համար, պաշտպանելով նրանց բոլոր օգտակար ձեռնարկումները, նախաձեռնություններն ու ինքնուրույնությունը, որպեսզի Հայաստանի պիոներական կազմակերպության մարտական ջոկատներից մեկը՝ պատկոմական մի քանի խմբերից մինչև 13 հազարի հասած Լենինականի պիոներական կազմակերպությունը քայլի հանրապետության դրոշակակիրների շարքերում:

Դ. Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
ՀԿԿ Լենինականի քաղաքային կոմիտեի առաջին քարտուղար



## ԳՅՈՒՄՐԻ-ԼԵՆԻՆԱԿԱՆ

Դու բազմաոճ, հոգով առողջ,
Հայոց ազգիս զավակ անխոնջ,
Դու իմ օրրան, իմ օթևան,
Երգ ու տաղի դու հանգրվան:

Իզուր չէ, որ, իմ վեհություն,
Հենց քեզ իբրև մկրտություն,
Արժանորեն մկրտեցին,
Իլյիչի անվամբ կոչեցին:

Իմ հի՛ն Գյումրի, Լենինակա՛ն,
Անվի՜շտ մնաս դու հավիտյան,
Որ միշտ այսպես, մեծ ցնծությամբ
Տոնդ տոնես անմահության:

ԿԱՐԵՆ ՄԻԼԻՏՈՍՅԱՆ
№ 29 դպրոց, 9-րդ դաս.

## ԳԱՐՈՒՆ

Գարունը պայծառ
Արևով զուգվել,
Վարդի բուրմունքն է
Շուրջս տարածել:

Գարունը սիրուն
Կանաչով պատվել,
Թռչնի դայլայլն է
Սրտերիս բերել:

Գարունը զվարթ
Ժպիտով բացվել,
Մարդկանց թախիծն է
Ցրել, փարատել:

ԱՐՄԵՆ ԾԱՏՈՒՐՅԱՆ
№ 20-րդ դպրոց, 7-րդ դաս.



ՄԻՍԱԿ ՊԻՊՈՅԱՆ
№ 25 դպրոց, 6-րդ դաս.

## ՏՐԻՈԼԵՏ

Դանդաղ իջնում է երկնի վարագույրը,
Գիշերվա վարագույրը՝ վրան փոքրիկ լուսինը,
Ծուրջը փայլում են մանրիկ աստղերը...
Դանդաղ իջնում է երկնի վարագույրը:
Հետո փակվում են բոլոր աչքերը,
Ապա բացվում են երազող սրտերը,
Դանդաղ իջնում է երկնի վարագույրը,
Գիշերվա վարագույրը՝ վրան փոքրիկ լուսինը:

ՀԱՍՄԻԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
№ 8 դպրոց, 10-րդ դաս.

## ՄԵՐ ՏԱՆ ՓՈՔՐԻԿԸ ԵՍ ԵՄ

Մեր տան փոքրիկը ես եմ,
Կատակասերը ես եմ,
Միշտ ժպիտը իմ դեմքին,
Ամպեր ցրողը ես եմ:

Բաժակներ եմ լվանում,
Մեր բակն ու դուռը ավլում,
Ուրախ-ուրախ թռչկոտում,
Մայրիկիս սիրտը բացում:

Մեր տան փոքրիկը ես եմ,
Գույն-գույն թիթեռը ես եմ:

ԱՄԱԼՅԱ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
№ 33 դպր., 4-րդ դաս.



ԱՆԱՀԻՏ ՄԱՅԱԿՅԱՆ
№ 2 դպրոց, 3-րդ դաս.

## ՁԵԶ ԲՈԼՈՐԻԴ, ՄԱՐԴԻԿ

Արև ունեմ սրտիս խորքում,
Ես այն ու՞մ տամ,
Երկինք ունեմ աչքերիս մեջ,
Ես այն ու՞մ տամ,
Ծիծաղ թովիչ, իսկ շուրթերիս
Քնքուշ մի երգ,
Ես այն ու՞մ տամ,
Թախիծ ունեմ երգերիս մեջ
Եվ երազներ ունեմ պայծառ,
Ես այն ու՞մ տամ,—
Ձե՛զ տամ, մարդի՛կ,
Ձեզ բոլորիդ...

ՍՈՆԱ ԱՆՏՈՆՅԱՆ
10-րդ դաս.



ԱՐՏԵՄ ՍԱՍՈՒՆՅԱՆ
№ 11 դպրոց, 2-րդ դաս.

# Թվեր, փաստեր

Բնակչությունը 1984 թ. հունվարի 1-ի վիճակով— 220 հազար մարդ:
БՈՒՀԵՐ
Մ. Նալբանդյանի անվ. հայկական մանկավարժական ինստիտուտ:
Կ. Մարքսի անվան ԵՐՊԻ Լենինականի մասնաճյուղ:
ԳԻՏԱԿԱՆ ՀԻՄՆԱՐԿՆԵՐ
Գեոֆիզիկայի և երկրաշարժաբանության գիտահետազոտական ինստիտուտ:
«Էլեկտրոն» ՀԱՄ ԷԿՏԲ (նախագծային):
Ինքնությունն փորձնական կոնստրուկտորական տեխնոլոգիական ինստիտուտ:
ՄԻՋՆԱԿԱՐԳ ՄԱՍՆԱԳԻՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐ
Մանկավարժական ուսումնարան:
Բժշկական ուսումնարան:
Շինարարական տեխնիկում:
Երաժշտական ուսումնարան:
Հաստոցագործիքաշինական տեխնիկում:
Թեթև արդյունաբերության տեխնիկում:
Երկաթուղային տեխնիկում:
ՊՐՈՖՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՐԱՆՆԵՐ—13
ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՐԹՈՒԹՅՈՒՆ
Հանրակրթական դպրոց— 37:
Գիշերօթիկ դպրոց—6:
Բաներիտ դպրոց—7:
Մանկական սպորտդպրոց—6:
Պիոներպալատ—1:
Պատանի տեխնիկների կայան—1:
Պատանի բնասերների կայան—1:
Պատանի տուրիստների կայան—1:
Մանկական տուրիստական բազա—1:
Մանկապարտեզ—44:
Գերատեսչական մանկապարտեզ—21:
Երաժշտական դպրոցներ—6 (3000 սովորողներով):
Արվեստի դպրոց—1 (150 սովորողներով):
















Գեղարվեստի դպրոց—1
Գրադարաններ—18:

## ՄՇԱԿՈՒՅԹԻ ՕՋԱԽՆԵՐ ԵՎ ԹԱՆԳԱՐԱՆՆԵՐ

Շիրակի պատմության թանգարան:
Ավ. Իսահակյանի
տուն-թանգարան:
Բ. Ղարիբջանյանի
տուն-թանգարան:
Ազգագրական թանգարան:
Պատկերասրահ (Հայկ. ՍՍՀ
պետական պատկերասրահի
մասնաճյուղ):
Մանկական պատկերասրահ:
Գրադարաններ—18:
Աշխատանքային Կարմիր դրոշի
շքանշանակիր պետական
դրամատիկական թատրոն:
«Հայհամերգի»
Լենինականի մասնաճյուղ:
Տիկնիկային թատրոն:
Կինոթատրոն—4:
Կուլտուրայի պալատ—6:
Ստ. Շահումյանի անվ. կուլտուրայի
և հանգստի զբոսայգի:
Բարեկամության զբոսայգի:
Երիտասարդական պալատ:

## ԱՌՈՂՋԱՊԱՀՈՒԹՅՈՒՆ

Բուժական հիմնարկ—23
(1805 մահճակալով):

## ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆ—40

Թեթև-արդյունաբերական-
բամբակագործական միավորում:
Գուլպա-կիսագուլպեղենի միավորում:
Կարի միավորում:
Տրիկոտաժի ֆաբրիկա:
Կոշիկի ֆաբրիկա:
Ս. Լուկաշինի անվ.
մանվածքագործական ֆաբրիկա:
«Շիրակ» կոմբինատ:

## ԳՈՐԾԱՐԱՆՆԵՐ

Էլեկտրատեխնիկական:
Հղկահաստոցների:
«Ստրոմմեքենաշինական»:
«Միկրոէլեկտրաշարժիչ»
Անալիտիկ սարքերի փորձնական:
«Էլեկտրակենցաղսարքավորում»:
«Մագնիսալար» գործարան:
Հեծանիվի:
Ավտոբուսների վերանորոգման
փորձնական:

## ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ

Շինարարական կազմակերպություն—6:



● Րաֆֆու անվան դպրոցի Սեմյոն Մարտոյանի անունը կրող դրուժինայում ծնունդ է առել «Բանվորական օրվան՝ պիոներական ժամեր» շարժումը: Արձագանքելով հիշյալ նախաձեռնությանը, քաղաքի տասնյակ պիոներական կոլեկտիվներ շաբաթը մեկ-երկու անգամ լինում են իրենց շեֆ ձեռնարկությունների արտադրամասերում: Օգնում են առանձին բրիգադների երկրորդական համարվող աշխատանքային գործերում: Պիոներները մաքրում են արտադրամասերը, հաստոցներին են մոտեցնում հումքը, կատարում են այլ օժանդակ աշխատանքներ, որոնք օգնում են բանվորներին խնայելու իրենց ժամանակը և ավելի շատ արտադրանք տալու:

● Աբովյանի անվան դպրոցում սկիզբ առավ «Դուք՝ արտադրությունում, մենք՝ ուսման մեջ» շարժման նոր տարբերակը, որը կրում է «Բանվորական օրվան՝ որակյալ արտադրանք, դպրոցական դասաժամերին՝ գերազանց գնահատական» նշանաբանը: Այս նախաձեռնությունը մի ինքնատիպ մրցություն է առաջացրել պիոներական ու բանվորական կոլեկտիվների միջև, մրցություն, որից ծնվում են նոր ու հետաքրքիր գործեր, հայրենանվեր աշխատանքներ:

● Պիոներական կազմակերպության քաղաքային «Կայծ»» շտաբը հանդես եկավ «Կումայրի» ճարտարապետական արգելոցին՝ պիոներական հոգատարություն» հայրենասիրական նախաձեռնությամբ։ Շտաբի կոչով պիոներական դրուժինաները վերցրել են կոնկրետ ու գործարար պարտավորություններ ինչպես հարազատ քաղաքի հնությունների պահպանման ու խնամքի, այնպես էլ դրանց պատմության ուսումնասիրման և անձնագրերի ստեղծման ուղղությամբ։ Արդեն շուրջ 30 օբյեկտներ ստացել են պիոներական անձնագիր։

● Կիրովի անվան դպրոցի կարմիր հետախույզները անցնելով 409 դիվիզիայի հետքերով, ստեղծել են մարտական փառքի մի գեղեցիկ սրահ, որը հարուստ է ցուցանմուշներով ու փաստաթղթերով, թեմատիկ վահանակներով։

● Շահումյանի անվան դպրոցի կարմիր հետախույզներն ու թիմուրականները անցել են անմահ հեղափոխական Ստեփան Շահումյանի եղած վայրերով, ստեղծել անկյուն հեղափոխության մարտիկներին նվիրված, որը հարուստ է բովանդակալից, ուշագրավ նյութերով։

● Տերյանի անվան դպրոցում պատանի լենինյանների ակտիվ աջակցությամբ ծնունդ են առել երկու թանգարան։ Նրանցից մեկը պատմում է քաղաքի մանկական ու երիտասարդական կազմակերպությունների անցած ուղու մասին, իսկ մյուսը, որը վերածված է «Հայրենագիտական թանգարանի», նվիրված է քաղաքի պատմության լուսաբանմանը։

● Քաղաքի պիոներական դրուժինաները հավաքել ու պետությանն են հանձնել 220 տոննա մետաղի ջարդոն, 120 տոննա թղթի թափոն, 700 կգ դեղաբույսեր, տնկել են 1500 ծառ ու թուփ, աճեցրել 2800 ծաղկամանային ծաղիկներ։ Նրանք մեծ ակտիվությամբ են մասնակցել Ախուրյանի, Ղուկասյանի, Ամասիայի գյուղական շրջանների հանրային դաշտերում անցկացված աշխատանքային դեսանտներին։ Հավաքել ու կոլտնտեսություններին են հանձնել հարյուրավոր ցենտներ ճակընդեղ, գազար, գյուղատնտեսական այլ կուլտուրաներ։



Լուսանկարը՝ ՄԱՆՎԵԼ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

# ԿՈՒՄԱՅՐԻ—ԳՅՈՒՄՐԻ—ԱԼԵՔՍԱՆԴՐԱՊՈԼ—ԼԵՆԻՆԱԿԱՆ

Արևելյան Հայաստանը երբ արդեն միավորված էր Ռուսաստանին, 1837 թվին Գյումրի այցելեց Նիկոլայ 1-ին կայսրը, և ահա այդ ժամանակ հինավուրց Գյումրի քաղաքը վերանվանվեց կայսեր կնոջ՝ կայսրուհի Ալեքսանդրայի անունով՝ Ալեքսանդրապոլ:

Գյումրին իբրև բնակավայր գոյություն է ունեցել անհիշելի ժամանակներից: Գյումրի անվան բացատրության և սկզբնավորման ստույգ ժամանակի շուրջ գիտնականները տակավին տարակարծությունների մեջ են:

Առաջին գրավոր ճշգրիտ տեղեկությունը Գյումրի բնակավայրի մասին հաղորդում է 8-րդ դարի պատմիչ Ղևոնդը: Նկարագրելով արաբական տիրապետության դեմ վարած ժողովրդաազատագրական շռիվները, նա պատմում է, թե ինչպես ազատագրական այդ շարժման ղեկավար Արտավազդ Մամիկոնյանը Դվին քաղաքում մեծաքանակ զորք է հավաքում, սպառազինում և շարժվում դեպի Շիրակի գավառն ու հասնում Կումայրի գյուղը:

Կումայրի գյուղը մի սովորական հայկական գյուղ է եղել, որից մեզ են հասել այդ ժամանակվա եկեղեցու ավերակները միայն:

Երկրորդ հիշատակությունը այդ բնակավայրի մասին վերաբերում է 10-րդ դարին: Մեզ հասած ձեռագիր պատառիկներից իմանում ենք ոմն Հովասափի մասին, որ ծնունդով Կումայրի գյուղաքաղաքից էր:

Այստեղ արդեն Կումայրին գյուղ չէր, այլ գյուղաքաղաք:

Այնուհետև, դարձյալ գրավոր աղբյուրներից, իմանում ենք, որ 1724 թվի հունիսին թուրքական Արիֆահմադ փաշան Գյումրիի վրայով գալիս ասպատակում է Արարատյան դաշտը:

Իրար հաջորդող նորանոր բազում ասպատակությունների ու ավերածությունների ենթարկվելուց հետո, վերջապես Արևելյան Հայաստանը ազատագրվելով պարսկական լծից, մտնում է Ռուսաստանի կազմի մեջ: Կառուցվում է Ալեքսանդրապոլ վերանվանված Գյումրու բերդը, որով առավել մեծանում է քաղաքի դերն ու նշանակությունը: Նա հանդիսանում է ռազմական կարևոր հենակետ Թուրքիայի դեմ:

Քաղաքական ապահովության շնորհիվ քաղաքում բուռն զարգացում են ապրում արհեստներն ու առևտուրը:

Ալեքսանդրապոլը դառնում է Անդրկովկասի արհեստավորական խոշոր կենտրոններից: Արհեստավորների թիվը այստեղ ավելին էր, քան համբավավոր Թիֆլիս քաղաքում: Ալեքսանդրապոլի բնակչության ամեն չորս տղամարդուց մեկը արհեստավոր էր: Իսկ առևտուրը դուրս էր եկել Անդրկովկասյան ասպարեզ և լայն ճանաչում գտել:

1868 թվի տվյալներով. Թիֆլիսում վարպետների ու ենթավարպետների ընդհանուր քանակը չէր անցնում 1500-ից, մինչդեռ նույն ժամանակ դրանց թիվը Ալեքսանդրապոլում հասնում էր 2183-ի:

Գյումրին հռչակված էր ոչ միայն իր արհեստավորների ոսկե ձեռքերով, այլև արվեստների, նշանավոր արվեստագետների՝ բանաստեղծների և երաժիշտների աստղաբույլերով (Իսահակյան, Շուշանիկ Կուրղինյան, Ջիվանի, Շերամ, Արմեն և Նիկողայոս Տիգրանյաններ և շատ ուրիշներ, հորդաբուխ մի աղբյուր, որ երբեք

# ԿՈՒՄԱՅՐԻ — —ԳՅՈՒՄՐԻ— —ԱԼԵՔՍԱՆԴՐԱՊՈԼ— —ԼԵՆԻՆԱԿԱՆ

չցամաքեց, մեր օրերում տվեց Հովհաննես Շիրազ և ժամանակակից շատ ու շատ արվեստագետներ՝ նկարչության, թատրոնի և այլ ու այլ բնագավառների, որ այսօր գործում են մեր կողքին, մեզ համար, հայոց մշակույթի գանձարանը մուծելով նորանոր արժեքներ):

Այս ամենի հետ Գյումրիում կենցաղի, վարքուբարքի, բարոյական հասկացողությունների ուրույն ավանդություններ մշակվեցին, որոնք այսօր էլ անաղարտ պահում, պահպանում են հինավուրց գյումրեցիների հետնորդները՝ մեր օրերի լենինականցիները, հանդես գալով իրենց՝ լենինականցիներին բնորոշ մարդկային հմայիչ դիմագծով:

Ցարական Ռուսաստանում առևտրականները, ըստ իրենց ունեցվածքի բաժանվում էին չորս կարգի՝ այսպես կոչված գիլդիայի, որով և պայմանավորված էր նրանց կշիռը հասարակության աչքում: Ալեքսանդրապոլի առևտրականներից 116-ը այդպիսի վկայական ունեին, որոնցից առաջին գիլդիայի վկայական էին ըս-





տացել Խոյեցյանները և Ջիթողցյանները: Սրանց տները պահպանվում են իբրև հին Գյումրիի ճարտարապետական դեմքը բնորոշող թանգարանային նմուշներ: Ջիթողցյանց տունը նորոգվել է և տեղավորված է այնտեղ քաղաքի կենցաղի թանգարանը:

Ալեքսանդրապոլի տնտեսական դերի մեծացման հետ աճում էր քաղաքի բնակչությունը: Բնակչությունն աճում էր նաև ի հաշիվ Արևմտյան Հայաստանից այստեղ ապաստանող գաղթականների:

1899 թ. հունվարի 1-ին բացվեց Թիֆլիս-Ալեքսանդրապոլ երկաթգիծը, որով քաղաքը կապվեց ռուսական ընդհանուր ճանապարհացանցի հետ, և դրա շնորհիվ աճեց ապրանքափոխանակության ծավալը և արդյունաբերական ձեռնարկությունների թիվը:

Այնուհետև կառուցվեց Երևան-Ալեքսանդրապոլ, Կարս-Ալեքսանդրապոլ երկաթուղային հանգույցը:

Հանդես եկավ բանվորական ստվար մի բանակ, որ ակտիվորեն արձագանքում էր ժամանակի քաղաքական-հասարակական շարժումներին:

Դրա ամենավառ արտահայտությունը եղավ 1920 թվի Մայիսյան ապստամբությունը, երբ քաղաքի հեղափոխականները տրամադրված աշխատավորությունը, լեգենդար հեղափոխական Մուսայելյանի գլխավորած «Վարդան Զորավար» զրահագնացքի օգնությամբ, գրավեց քաղաքի կարևորագույն հենակետերը և քաղաքում հաստատեց սովետական կարգեր: Բայց հեղափոխության թշնամիներին հաջողվեց կրկին զավթել իշխանությունը և չարաչար դատաստան տեսնել ապստամբության ղեկավարներ Ղարիբջանյանի, Մուսայելյանի, Սնյանի և մյուսների հետ:

Մի քանի ամիս, և Ալեքսանդրապոլի գլխին կրկին ծածանվեց կարմիր դրոշը: Մի քանի տարի, և նրան վիճակվեց անմահ Լենինի անունը կրելու բախտն ու պատիվը ունենալ:

Անցել է 60 տարի:

Եվ Լենինի անունը կրող քաղաքը ցույց է տվել, թե որքան արժանապատվորեն է կրում նա իր անունը:

Վկա՝ թվերը, փաստերը, լուսանկարները:

Վկա՝ նրա դրոշը զարդարող Ժողովուրդների բարեկամության շքանշանը:

# Ես լենինականցի եմ

## Լենինականցին՝ լենինականցու աչքերով

Արդեն 60 տարի է, ինչ իմ քաղաքը կրում է մեծ առաջնորդի՝ Վ. Ի. Լենինի անունը: Իմ քաղաքը արժանապատվությամբ է կրում այդ նվիրական ու վսեմ անունը: Իր վերածնունդից մինչև այսօր ի՜նչ հերոսական ճանապարհ է անցել, ի՜նչ իրադարձություններով լեցուն առօրյայով է ապրել:

Մենք՝ լենինականցիներս, լավ գիտենք, ու հպարտ ենք, որ մենք մեր քաղաքի որդին ու շունչն ենք, ծաղկեցնողն ու դրոշակակիրը...

Առաջին երկաթուղի, առաջին լրագիր, օպերայի առաջին բեմադրությունը... Մայիսյան ապստամբություն, դեպոն կռիվ է մղում «Վարդան զորավար» զրահագնացքով... Հաղթանա՜կ... Եվ այնուհետև, Կումայրի, Գյումրի, Ալեքսանդրապոլ, և ապա շարունակում է իր հաղթական երթը իր նոր, կարմիր անունով՝ Լենինական...

Մենք մեր քաղաքի պատմությունը լավ գիտենք, այն մեր հայրերի ու պապերի անցած ուղին է: Լենինականը դառնում է արդյունաբերական խոշոր կենտրոն, մեր տեքստիլ կոմբինատի արտադրանքը լայն պահանջարկ ունի ոչ միայն Սովետական Միությունում, այլ նրա սահմաններից դուրս և կրում է պետական որականիշ:

Մեր քաղաքը ոչ միայն բարձր զարգացած արդյունաբերության, գիտության ու տեխնիկայի քաղաք է, այլև ուժի և գեղեցկության, դյուցազունների ու չեմպիոնների քաղաք... Մենք ասում ենք՝ Յուրիկ Վարդանյանը լենինականցի է, ապա ավելացնում ենք՝ մենք էլ ենք լենինականցի, մեր համաքաղաքացին է նա... Եվ ոչ միայն նա:

Լենինականցին ոչ միայն ուժի և գեղեցկության ասպետ պետք է լինի, այլև՝ աշխատանքի հերոս, կռվի դաշտում՝ հայրենիքը պաշտպանող քաջարի մարտիկ... «Մայր Հայաստան» հուշարձան-կոթողը կառուցվել է իրենց կյանքը հայրենիքին նվիրաբերած լենինականցի հայ մարտիկների հիշատակին:

Լենինականի ու լենինականցիների կենսագրությունը շարունակվում է: Որպես հետաքրքիր ավանդույթների, հիշարժան պատմությունների ու հերոսական առօր-

---

Մենք՝ լենինականցիներս գտնում ենք, որ պատվի խնդիր է լենինականցի լինելը: Բարձր արժանապատվություն պիտի ունենաս, բազմաթիվ քննություններ պիտի բռնես, որ իրավունք ունենաս հպարտությամբ ասել՝ ես լենինականցի եմ: Անծանոթ միջավայրում, ճանապարհորդելիս, այլ քաղաքներում, մարդիկ անմիջապես նկատում են լենինականցուն:

Այդ ինչպե՞ս է լենինականցին տարբերվում, ինչո՞վ է աչքի ընկնում, ի՞նչ առանձնահատկություններով:

Եթե վտանգավոր, փորձությամբ լի պահ է, լենինականցին պարտավոր է լինել առաջին քայլ անողը, առանց ահ ու սարսափի, առաջինը ելք գտնողը, դուրս գալու համար վտանգից:

Եթե խաղ է, մրցություն, նա պետք է առաջինը հանդես բերի ճարպկություն, աշխույժ, հետաքրքիր ընթացք տա խաղին, նոր ձևեր ու տեսակներ առաջարկի ժամանակը բովանդակալից անցկացնելու համար:

Եթե վեճ է, լենինականցին պետք է ձգտի չպարտվել, ավելի ճիշտ՝ խելոք, խորը, համոզված իր կշռադատումներով ապացուցի իր ճշմարիտ լինելը:

Խմբով ճամփա գնալիս սովորաբար դիմում են լենինականցուն. «Լենինականցի ես, մի բան պատմիր լսենք, մի ուրախ բան, տրամադրություններս բացվի»... Եվ սկսվում է... Սրամիտ ծաղր ժլատների, տեղի մեծբերանների, թեթևամտության մասին և այլն:

Իզուր չէ, որ ասում են՝ անեկդոտը լենինականցու գրպանում դրած է: Եվ կամ՝ լենինականցի ես, մի շնորհքդ ցու՛յց տուր, մի երգի, մի պարի՛, մի համով-հոտով սեղա՛ն գցի...

Լենինականցու պար է, ասում են, լենինականցու հարսանիք, լենինականցու գաթա, լենինականցու հարս, լենինականցու աղջիկ...

Լենինականցուն եթե տղա է ծնվում, ծնողն համոզված է, որ նա պետք է լինի ոսկեկուռ, թափով տղա, մեծանա ու աշխարհի չեմպիոն

յայի քաղաք, Լենինականը վերածվում է գեղեցիկ ու բովանդակալից թանգարանի, բոլորիս աչքի առաջ, հայ ազգին բնորոշ իր ուրույն դիմագծով:

Ես լենինականցի եմ: Ուրեմն պարտավոր եմ լինել մեր ավագների գործի շարունակողը, հայրենասեր, մարտիկ՝ պայքարի դաշտում, հեղափոխական ամեն ինչի մեջ՝ գիտության, աշխատանքի, պիտի լինեմ առաջինը ուժեղների և հնարամիտների շարքում, ուրախների և խելացիների հավաքույթում... Լենինի անունը բարձր պահած մեր քաղաքի գերբի ու դրոշի վրա՝ պիտի խաղաղության աղավնի լինենք ամբողջ աշխարհի մեծ երկընքում...

**ԽԱՉԱՏՈՒՐ ԽԱՉԱՏՐՅԱՆ**
№ 11 դպրոց, 8-րդ դաս.

Երբ հեռու եմ լինում իմ քաղաքից, կարոտում եմ, հիշում եմ գեղեցիկ ու շեն իմ Լենինականը, որ այգեստան է իր ընդարձակ կանաչ տարածություններով: Ցերեկային շուշանագույն լույսերը իրիկնադեմին թվացնում են, թե մի հեքիաթային վայրում ես գտնվում, ծառերի ստվերում դրված են գունավոր նստարաններ, նրանց վրա մարդիկ գալիս նստում, հանգստանում են, զրուցում, բարձրախոսով ունկընդրում շիրակցի վարպետների՝ Իսահակյանի, Շիրազի պոեզիան, վայելում շիրակցի երգիչ-երգչուհիների հոգեպարար, սրտահույզ երգը: Եվ ապա մեծ ուշադրությամբ լսում են աշխարհի տարբեր ծայրերից հաղորդվող լուրերը՝ տեղեկանում լենինականցի դյուցազունների հաջողություններին:

Ո՞ւմ սիրտը չի լցվում հպարտությամբ, որ ապրում է այս քաղաքում, լինելով խելացի ու ջերմ սրտով մարդկանց հայրենակիցը, նրանց ժառանգորդն ու հետևորդը:

Ես ինչպես որ հպարտությամբ ասում եմ՝ ես լենինականցի եմ, այնպես էլ ամբողջ սրտով երդվում եմ ամբողջ կյանքում ձգտել լինել ազնիվ ու առաջադեմ, իմ քաղաքին արժանի քաղաքացի:

**ՌՈՒԶԱՆՆԱ ԱԼԵՔՍԱՆՅԱՆ**
№ 29 դպրոց, 8-րդ դաս.

Ես շատ եմ սիրում նրանց, ովքեր մարդկանց նկատմամբ բարի են: Այդպիսի մարդիկ շատ կան և նրանք ապրում են «մեկը բոլորի համար, բոլորը՝ մեկի» նշանաբանով: Իմ սիրելի Լենինականում այսպիսի բարի ու նվիրված մարդիկ շատ են: Նրանք չեն թողնում, որ մեկնումեկը մենակ մնա իր տխրության ու վշտի մեջ:

Ես Լենինականը շատ եմ սիրում նաև նրա համար, որ այն կրում է մեծ առաջնորդ և ուսուցիչ Վլադիմիր Իլյիչ Լենինի անունը:

Ես ուզում եմ լավ սովորել և միշտ բարձր առաջադիմությամբ, հպարտ կրել իմ՝ լենինականցու անունը ու իմ հերթին բարձր պահել Լենինականի պատիվը:

**ԳԱԳԻԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
№ 33 դպրոց, 5-րդ դաս.

---

դառնա... Այդպես էլ համոզված մեծացնում է լենինականցին ապագա իր չեմպիոնացուին...

Իսկ լենինականցի աղջիկը առաջին հերթին կոչված է այդ ոսկեկուռ տղաների՝ չեմպիոնացուների, ապագա մայր լինել, այլապես «սևերես» կմնան, եթե դյուցազուններ՝ ուժի և գեղեցկության հսկաներ լույս աշխարհ չբերի, մրցակից՝ աշխարհի ուժեղներին...

Լենինականցի տղան պարտավոր է իր հայ նախնիների ամրակուռ տղամարդավարի կեցվածքը, ձայնի տոնը, բազկի ուժը ունենալ, լինել թասիբով, իր խոսքի տերը, ընկերասեր ու ձեռնբաց, պատրաստ՝ զոհաբերությունների, դիմագրավելու դժվարությունները, թեկուզև կոպիտ թվացող խոսքի ու վարմունքի մեջ՝ թաքնված ջերմ սրտի տեր լինի, նվիրված հարազատին, ոսկե ձեռքեր ունենա, հունարով լինի, բարի նախանձով վերաբերվի պատվավոր, անուն հանած մարդկանց, ձգտում ունենա նմանվել նրանց, լինել իսկական տղամարդ, ազգասեր:

Եթե լենինականցի աղջիկ ես, «ձեռքիցդ ամեն ինչ պետք է գա», փոքրուց պետք է սովորես «տուն պահել», խիստ սրտացավ լինել հարազատների նկատմամբ, ուշադիր, հոգատար դեպի անծանոթը, լինես ամոթխած, համեստ ու բարձր արժանապատվության տեր, փողոցում թույլ չպիտի տաս ծանոթություններ պատահական տղաների հետ, թեթևամիտ արարքներ, պետք է զուսպ, գեղեցիկ և սիրուն հագնվես՝ պահպանելով գյումրեցու ազգային տարազների ոճը: Պետք է լինես գրասեր, արվեստասեր:

Մի խոսքով, պատասխանատու գործ է ծնունդով լենինականցի լինելը: Ամեն մարդու բան չէ, ամեն մեկը չէ, որ իրավունք ունի ասելու.

— Ես լենինականցի եմ:

**ՏԱՆՅԱ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**
Լենինական քաղաքի մանկական պատկերասրահի գրական ստուդիայի ղեկավար







# ԱՅՍՏԵՂ ՏԱՆՏԵՐԸ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐՆ ԵՆ

Լենինականյան բնավորության մեջ մի ընդգծված հատկանիշ կա. հատուկ սեր երեխաների հանդեպ։ Դրանում համոզվելու համար բավական է այցելել ցանկացած դպրոցը, ա-











ռավել ևս՝ պիոներների պալատը: Այստեղ ամեն ինչ տրամադրում է սովորելու, ստեղծագործելու, աշխատելու: Ընդարձակ ու լայն սրահները, ճաշակով ձևավորված կաբինետները, նաև տիրող մաքրությունը, մանավանդ մաքրությունը, ներշնչանքի առանձնահատուկ մթնոլորտ են ստեղծում:

— Այստեղ երեխաներն են տանտերերը, այստեղից էլ՝ նրանց հոգատարությունը, սերը պալատի հանդեպ,— ասում է պալատի դիրեկտոր ընկեր Գրիգորյանը:

Պալատում դեռ տոնական տրամադրություն էր տիրում. նշվել էր հիմնադրման 60-ամյակը: Այն և տոնակատարություն էր, և հաշվետվություն: Խմբակների, անսամբլների ելույթներից բոլորն էին գոհ մնացել, հյուրերը բազմաթիվ հիացական կարծիքներ էին հայտնել, իսկ տանտերերի ուրախությանը չափ ու սահ-







ման չկար։

«Նաիրի» ինտերնացիոնալ բարեկամության ակումբը հին ավանդույթներ ունի։ Միմյանց հետ հաղորդակցվելու մղումն է երեխաներին այստեղ բերում։ Նրանք ցանկանում են իրենց երազանքներին, մտածումներին հաղորդակից դարձնել իրենց հասակակիցներին։ Օրերս էլ ստացել էին մի պատասխան-պլակատ... Ճապոնիայից։ Պլակատին խաղաղության խորհրդանիշերն էին պատկերված՝ թևին տվող աղավնիներ։ Ակումբն ունի թարգմանչական խմբակ։ Այդ խմբակի անդամներն էլ հենց թարգմանում են տարբեր լեզուներով ստացվող նամակները։ Այդ իր հերթին օգնում է նրանց հմտանալ լեզուների իմացության մեջ։

Քանդակագործության խմբակում խիստ զգալի էր աշխատանքային մթնոլորտը։ Կավը կենդանություն էր առնում երեխաների ձեռքի տակ։ Պատանի քանդակագործների իսկ խոստովանությամբ նրանց ավելի շատ գրավում են դիմաքանդակները։ Նրանք ձգտում են պատկերել իրենց ժամանակակցին՝ նրան բնորոշ հույզերով ու ապրումներով, հոգսերով ու ուրախություններով։

Կարուձևի խմբակում աղջիկները իրենց հըմուտ ղեկավարի՝ Վարդանուշ Ծառոյանի օգնությամբ արդեն կարողանում են ձևել և կարել զգեստներ թե՛ մեծահասակների, թե՛ իրենց համար։ Նրանք լավ գիտեն, թե որքան անհրաժեշտ է իրենց մասնագիտությունը։ Նաև գիտեն, որ կարևոր է ոչ միայն դպրոցում, այլ նաև... տանը լինել գերազանցիկ։

Ռադիոէլեկտրոնիկայի խմբակում միայն գործնական պարապմունքներ չեն անցկացնում։ Խմբակի ղեկավարը՝ Մամիկոն Միրոնյանը նրանց համար, ովքեր հրապուրված են ֆիզիկայով, անցկացնում է նաև տեսական պարապմունքներ։ Խմբակը մասնագիտական կողմնորոշման հարցում վճռորոշ նշանակություն ունի։ Ինքը՝ ընկեր Միրոնյանը նույնպես եղել է խմբակի սան։

Ինչ պալատ առանց երգ-երաժշտության, պարի։ Պալատում փողային նվագախումբը, պարի անսամբլը, ակորդեոնիստների և դհոլահարների խմբակները բարի համբավ են վայելում։ Պալատի 60-ամյակին նվիրված տոնական համերգին նրանք պարզապես հիացրին։

Լենինականի պիոներների պալատի ուսուցիչներն ու սաները շատ գործ են արել։ Բայց դեռ շատ անելիքներ էլ ունեն։ Եվ նրանք աշխատում են, ստեղծագործում հավատով, նըվիրումով։

ԳԱՌՆԻԿ ՄԿՐՏՉՅԱՆ



## ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԼԵՆԻՆԱԿԱՆԻ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

Գարուն է նորից
Եվ նորից գարուն,
Զուգվել է դաշտը,
Լցվել է առուն։

Դաշտը հարբել է
Կանաչի բույրով,
Առուն հեղեղվել
Հալված ձյուներով։

Թռչուններն ուրախ
Թփից-թուփ թռչում,
Ձվեր են դնում
Եվ ձագեր հանում։

ՏԻԳՐԱՆ ՊՈՂՈՍՅԱՆ
Լ. Տոլստոյի անվան № 22
դպրոց, 9-րդ դաս.

## ՅՈԹ, ՈՒԹ...

Յոթ, ութ, ինը, տաս...
Մենք ունեինք մի կարաս,
Խոսում էինք,
Խոսում էր,
Լռում էինք,
Լռում էր,
Թե հազայինք,
Կհազար,
Երգ ասեինք,
Երգ կասեր։
Յոթ, ութ, ինը, տաս,
Ա՛յ քեզ, ի՛սկը մարդ կարաս....

ՆԱՐԻՆԵ ՍԱՐԻԲԵԿՅԱՆ
Լենինականի № 21 միջն.
դպրոցի 4-րդ դաս.

## ՄԱՅՐԻԿԻՍ

Ծաղիկնե՛ր, բացե՛ք ձեր աչիկները,
Քնքուշ ժպտացե՛ք մայր արեգակին,
Հովե՛ր, ինձ տվե՛ք դուք ձեր թևերը,
Համբույրներ տանեմ իմ մայրիկին։

Սոխակնե՛ր, տվե՛ք ինձ ձեր դայլայլը.
Երազներ տանեմ իմ մայրիկին,
Գարուննե՛ր, տվե՛ք ձեր ժպիտները,
Ժպիտներ տանեմ իմ մայրիկին։

Ծաղիկնե՛ր, համբուրե՛ք մորս աչքերը,
Երբ ես չեմ լինի մայրիկիս կողքին,
Արեգա՛կ, տու՛ր ինձ քո ջերմ շողերը,
Բյուր շողեր տանեմ իմ մայրիկին։

ՓԻՐՈՒՄՅԱՆ ԱՆԱՀԻՏ
Ն. Նեկրասովի անվան № 18
դպրոց, 10-րդ դաս.



# ՊԱՊՆ ՈՒ ԹՈՌԸ

ՆԿ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Պապը ցնծության մեջ էր: Իսկ պատճա՞ռը... Պատճառն այն էր, որ ամենակրտսեր թոռը դպրոց էր գնալու, այն էլ՝ պապի ուսած դպրոցը:

Երեխայի գործերն ինքն իր ձեռքով տարավ հանձնեց դպրոց և երբ դպրոցից դուրս եկավ, ասես արևը ուրիշ լույս ուներ, օդը՝ ուրիշ բուրմունք:

— Թոռս դպրոց է գնալու,— ասում էր պապը հանդիպած ծանոթներին: Իսկ քաղաքի կեսը պապին ծանոթ էր, քանի որ պապը կես դար դպրոցում էր աշխատել, քաղաքի կեսը անցել էր պապի ձեռքի տակով: Կատա՞կ բան է՝ կես դար:

Եկավ սեպտեմբերի մեկը:

Վաղ առավոտ էր: Տնեցիները հանգիստ քնած էին: Անհանգիստ էր միայն պապը:

Ամբողջ գիշեր նա շուռ ու մուռ էր եկել անկողնում:

Լույսը չբացված վեր կացավ:

Նա գնաց խոհանոց, որ չարթնացնի տնեցիներին, չմոռացավ իր հետ տանել Արսենիկի պայուսակը:

Վառելով խոհանոցի լույսը, պապը խնամքով ստուգեց պայուսակի պարունակությունը, ապա հանդիսավորությամբ դրեց խոհանոցի սեղանին: Անշտապ սափրվեց: Իսկ ժամացույցի սլաքները չէին շտապում:

Ժամանակն ասես կանգնել էր: Պապը ընտուգեց ժամացույցը: Չէ՛, աշխատում էր: Նա ժամացույցի սլաքները տասը րոպե առաջ տարավ, ասես, դրանից օրը պետք է շուտ բացվեր: Ապա մի գիրք առավ ձեռքը: Եվ կյանքում առաջին անգամ պապը չկարողացավ կարդալ: Նրա հայացքը սահում էր տողերի վրայով, բայց միտքը միայն Արսենիկի կողմն էր, որը հանգիստ քնած էր:

Երբ սլաքները վերջապես ցույց տվեցին ժամը յոթը, պապը տեղից վեր կացավ.

— Հերի՛ք քնեք,— ձայն տվեց տանեցիներին,— վե՛ր կացեք, շուտ թեյենք: Մենք դպրոց ենք գնալու:

Ահա ընտանիքի անդամներն արդեն նստած են սեղանի շուրջը, Արսենիկը հանգիստ հաց է ուտում, իսկ պապը անհանգիստ քայլում է սենյակի մի անկյունից մյուսը:

Նա չէր շտապեցնում երեխային. թող հանգիստ հաց ուտի: Բայց ինքը սեղանին չմոտեցավ: Ուրախությունից ու անհամբերությունից:

Վերջապես, պապ ու թոռ դուրս եկան տանից:

Պապր մի ձեռքով՝ թոռնիկի ձեռքը, մյուս ձեռքով նրա դպրոցական պայուսակը բռնած, ժպիտը դեմքին, երիտասարդացած, թոռնիկի հետ քայլում էր դեպի դպրոց:

ՆՈՒՆԵ ԳՐԻԳՈՐՅԱՆ



# Գեղագիտական դաստիարակության մեր օջախը

Լենինականի քաղաքի մանկական պատկերասրահը բացվել է 1978 թվից։ Այդ թվից էլ պատկերասրահին կից գործում է գեղարվեստական ստուդիան։ Համարձակ փորձ արեց ստուդիան, առաջին փորձը ողջ Միության մեջ, ստուդիայում ընդգրկեց նաև փոքր՝ 3—4 տարեկան երեխաների։ Շուտով ստուդիայի սաների անդրանիկ ցուցահանդեսը ցրեց այն թյուր կարծիքը, թե այդ տարիքի երեխայի հետ հնարավոր չէ արդյունքի հասնել։ Արդյունքը ապշեցուցիչ էր, և ստուդիայի սաների թիվը գնալով ավելանում էր։ Այլևս հնարավոր չէր այն պահել հասարակական հիմունքներով և լուսավորության մինիստրությունը ժամեր տրամադրեց։ Դասավանդելու հրավիրվեցին երիտասարդ շնորհալի նկարիչ-մանկավարժներ։

Երեխային գեղագիտական դաստիարակություն տալ ամենևին չի նշանակում միայն նկարել սովորեցնել։ Հարկ է, որ նա շփվի երաժշտության, քանդակագործության, ասմունքի, գրականության, պարարվեստի և արվեստի մյուս ճյուղերի հետ։ Եվ ահա մեկը մյուսի հետևից ստեղծվեցին ասեղնագործության, խեցեգործության, արծաթագործության, ազգագրական, երգի-պարի, ժողովրդական պարի, խորեոգրաֆիկ, թատերական, վոկալ-գործիքային, կարպետագործության, գրական և քանդակի խմբեր։ Այժմ, երբ պատկերասրահը վաղուց արդեն հանդիսանում է մանուկների գեղագիտական դաստիարակության կարևոր օջախ և իր խմբերում ներգրավել է 500-ից ավելի երեխաներ, դարձել է փոքրիկների ամենասիրելի վայրը։ Երեխաները մասնակցում են ցանկացած խմբի պարապմունքներին։ Նրանց աշխատանքները ցուցադրվում են ցուցասրահներում։ Նրանց երգն ու պարը հնչում են բեմերից և բոլոր խմբերը ապրում են մեկը մյուսի կյանքով, անմիջական շփման մեջ են գտնվում իրար հետ։ Խմբերի և երեխաների քանակի ավելացման հետ սկսեց շենքի տարածքը նեղվածք դառնալ։ Քաղաքի ղեկավարությունը հոգաց այդ մասին, տրամադրեց բավականին ծավալուն կից կառույցը, որի շինարարությունը, հույսով ենք, չի ձգձգվի։

Մեր ստուդիաների համբավը արդեն վաղուց դուրս է եկել հանրապետության և Միության սահմաններից։ Նրանց աշխատանքները ցուցադրվել են Մերձբալթյան Տարտու, Կաունաս, Վիլնյուս քաղաքներում, Թբիլիսիում, Լենինգրադում։ Վերջերս հանդես եկան մայրաքաղաք Երևանի գեղագիտական դաստիարակության հանրապետական կենտրոնում։ Մեր աշխատանքները ցուցադրվել են նաև արտասահմանյան մի շարք երկրներում Հնդկաստանում, Լիոնում, ԳԴՀ-ում, Հունաստանում, Շրի Լանկայում, Պակիստանում...

Պատկերասրահի ցուցասրահում ամիսը մեկ անգամ ցուցանմուշները փոխվում են։ Դրանից զատ գործում է նաև շրջիկ ցուցահանդեսը, որը շրջում է քաղաքի մանկական հիվանդանոցներում, մանկապարտեզներում, երաժշտական դպրոցներում և այլուր։ Ավանդական են դարձել ամեն տարվա մայիսի 9-ին և հունիսի 1-ին բացօթյա ցուցահանդեսների կազմակերպումը Կոմերիտմիության այգում։ Այնտեղ դրվում են նաև նկարչատախտակներ, թուղթ, ներկեր և ամեն մի երեխա կարող է նստել ու նկարել։ Այս միջոցով հայտնաբերվում են շնորհալիները և բերվում ստուդիա։ Տարին երկու անգամ կազմակերպվում է նկարչական մրցույթ քաղաքային մասշտաբով, և այստեղ էլ նկատված շնորհալիները ընդգրկվում են ստուդիայում։ Այն երեխաների համար, որոնց ծնողները չեն կարող երեխային պատկերասրահ բերել-տանել, տեղում՝ դպրոցում կամ մանկապարտեզում կազմակերպվել են խմբեր, որոնց հետ պարապում են ստուդիայի դասատուները։ Այս ուսումնական տարվա նորությունը գրական ստուդիան է, որի սաների ստեղծագործությունների թեման սիրելի մայրիկն է, գարունն ու հայրենիքը, մաքուր երկինքն ու խաղաղությունը։ Վերջերս նրանց առաջարկվեց գրել երգի տեքստ հատուկ մեր վոկալ-գործիքային խմբի համար, որի երաժշտությունը պետք է հորինեին մեր մանուկ երաժիշտները և կատարեին։ Նրանք հորինեցին գեղեցիկ երգեր՝ հունիսի 1-ին երեխաների պաշտպանության միջազգային օրվան նվիրված ցերեկույթում կատարելու համար։ Այդ օրվա առթիվ բացվեցին 11 երեխաների անհատական ցուցահանդես, առաջին անգամ ցուցադրվեցին արծաթագործության նմուշներ։

Շատ մտահղացումներ ունենք, որ կիրականանան շենքային հարմարությունները բարելավվելու հետ։ Ծրագրում ենք ունենալ տիկնիկային թատրոն, փողային նվագախումբ, մնջախաղի թատրոն, ծնողական համալսարան, մեթոդական օգնության դասընթացներ նախադպրոցական հիմնարկների դաստիարակների համար և այլն։

Իսկ առայժմ թեկուզ և այս փոքրիկ, անհարմար շենքում առավոտից երեկո չի դադարում երեխաների ելումուտը, հնչում է երաժշտությունը, մանկական ուրախ երգն ու ծիծաղը։

**ՍՈՒՍԱՆՆԱ ՄԿՐՏՉՅԱՆ**
մանկական պատկերասրահի դիրեկտոր




# ԱՆԴՐԱՆԻԿ ԶԱՎԱԿԸ...

Լենինականի Մայիսյան ապստամբության անվան, Աշխատանքային կարմիր դրոշի և ժողովուրդների բարեկամության շքանշանակիր բամբակագործվածքային արտադրական միավորումը ստեղծվեց մեծ Լենինի ցուցումով: Նա Հայաստանի թեթև արդյունաբերության առաջնեկն է՝ անդրանիկ զավակը:

Եթե գործարկման առաջին տարում փոքրիկ գործարանը տվեց ընդամենը մոտ 10 տոննա մանվածք և 98 հազար մետր գործվածք, ապա հսկա միավորման վերածված ձեռնարկությունն այսօր այդքան արտադրանք տալիս է ընդամենը մի քանի ժամում:

Տեքստիլագործները իրենց հոյակերտ մշակույթի պալատում ունեն «Աշխատանքային փառքի թանգարան», որն զբաղեցնում է վեց սրահ: Այնտեղ լուսանկարների և այլ ցուցանմուշների լեզվով պատմվում է ձեռնարկության անցած ուղու և նրա մարդկանց մասին: Հիշենք թեկուզ Հովհաննես Ծիրազին, որ ձեռնարկության ցրիչն է եղել, կամ ՍՍՀՄ ժողովրդական դերասան Մհեր Մկրտչյանին, որ փոխադրող բանվոր է եղել ու առաջին արտիստական քայլերն արել մշակույթի պալատի գեղարվեստական ինքնագործունեության թատերախմբում:

Սերտ է կապը կոմբինատի և դպրոցների միջև: Ամեն տարի տեքստիլագործների կոլեկտիվում մեծ խնամքով է կազմակերպվում դպրոցականների աշխատանքային 5-րդ քառորդը:

Ամռանը հարյուրավոր դպրոցականներ են





աշխատում այստեղ, իբրև լիցքավորողներ, փաթաթողներ, հիննողներ, հանորդներ։ Ավելի քան 100 դպրոցական անցյալ ամռանը ձեռք բերեցին տեքստիլագործի տարբեր մասնագիտություններ։ Ձեռնարկության այդ կրտսեր օգնականների համար բազում-բազմազան միջոցառումներ են կազմակերպվում և ամրացնում նրանց անվանի վարպետ-դաստիարակներին անմիջապես արտադրական տեղամասերում։ Ձեռնարկությունում գործում են անվճար դասընթացներ նրանց համար, ովքեր ուզում են աշխատանքին զուգընթաց ձեռք բերել բարձրագույն մասնագիտական կրթություն։

Ամեն տարի միավորումում աշակերտական աշխատանքային քննաշրջանից ստացվում է ավելի քան 30 հազար ռուբլու օգուտ։ Բայց ամենամեծ օգուտը բարոյականն է՝ այն, որ դպրոցականներից շատերը միջնակարգն ավարտելուց հետո աշխատանքի են անցնում միավորումում՝ նախապես ընտրած մասնագիտությամբ։

Միավորումն այժմ իր մասնաճյուղերն ունի Արթիկում, Ալավերդում, Ստեփանավանում, մշակույթի պալատ, «Արագած» մարզակումբ, մանկական մարզադպրոց և երաժշտական դպրոց, նկարչական ստուդիա, բազմաթիվ հանրակացարաններ, ջերմատներ, մանկապարտեզներ, պիոներական և բակային ճամբարներ, առողջարան-պրոֆիլակտորիա և այլն։

ՌՈԲԵՐՏ ՀԱԿՈԲՅԱՆ



# ԵՐԵՎԱՆ

Երևանի գեղեցկությամբ հիացած՝
Ման եմ գալիս հայրիկիս ձեռքը բռնած:

Ինչքա՜ն մեծ է, ինչքա՜ն շքեղ, լուսավոր,
Մեր սիրելի մայրաքաղաքը այսօր:

Բարձր շենքեր՝ մինչև ամպերը հասած
Ու այգիներ ողջ քաղաքում տարածված:

Իր շենքերով, այգիներով հիացած,
Ման եմ գալիս հայրիկիս ձեռքը բռնած:

# ԻՄ ՀՈՐԵՂԲԱՅՐԸ

Իմ հորեղբայր Արսենը
Ճարտարապետ է, գիտե՞ք,
Կառուցում է մեծ տներ
Ու գեղեցիկ կամուրջներ:

Քանդակազարդ, գույնզգույն,
Կարծես փունջ-փունջ ծաղիկներ,
Ցրվել են ողջ քաղաքով
Ու քաղաքը զարդարել:

Ու այդ ծաղիկ շենքերով
Շատ-շատերն են հիացել,
Բայց չգիտեն, որ դրանք
Հորեղբայրս է կառուցել:

ԱԲՐԱՀԱՄՅԱՆ ՄԱՐԻԱՄ
Ալ. Շիրվանզադեի անվան № 1
դպրոց, 4-րդ դաս.



ԺԵՆՅԱ ՄՈՒՐԱԴՅԱՆ
№ 33 դպրոց, 8-րդ դաս.



ՍԵԴՐԱԿ ՍԱՐԳՍՅԱՆ
№ 9 դպրոց, 6-րդ դաս.

## ԳԱՐՈՒՆ ԵԿԱՎ ԱՇԽԱՐՀԻՆ

Գարուն եկավ աշխարհին,
Ծաղկեց բողբոջը,
Բուրեց ծաղիկը,
Հալվեց ձյունը սարերի:

Հովիվն առած գառներին՝
Ելավ, սարի լանջերին,
Փչեց շվին ու երգեց.
— Հե՜յ, ջա՜ն գարուն,
Գարուն եկավ աշխարհին...

ԼՈՒՍԻՆԵ ԱՎԱԳՅԱՆ
Լ. Տոլստոյի անվան № 22
դպրոց, 6-րդ դաս.

## ՄԱՅՐԻԿԻՍ

Աշխարհում՝ միայն մի սուրբ հայրենիք,
Աշխարհում՝ միայն մի քաղցր մայրիկ:
Նայում եմ մորս. ի՞նչ ասեմ նրան,
Գիշերներ անքուն ինձ է օրորել:
Ինչ որ քեզ ասեմ, քիչ է, իմ մայրի՛կ,
Ձեզնից առավել ոչինչ չեմ սիրում,
Ձեզ եմ ես սիրում,
Իմ քաղցր մայրիկ և սուրբ հայրենիք:

ՎԱՐԴԱՆՅԱՆ ՀՈՎՀԱՆՆԵՍ
Ն. Նեկրասովի անվան № 18
դպրոց, 8-րդ դաս.

## ՈՒՍՈՒՑՉՈՒՀՈՒՍ

Ծովը ունի այնքան ալիք,
Որքան ունի ավազն հատիկ,
Ցանկանում եմ քառապատիկ
Օրեր տեսնեք Դուք երջանիկ...

Ցանկանում եմ լավն ու բարին
Կյանքի Ձեր մեծ ճանապարհին,
Ազատ մնաք վշտի ամպից,
Ծաղիկ բացվի միշտ Ձեր ճամփին:

ԳՈՒՐԳԵՆ ՄԿՐՏՉՅԱՆ
Լ. Տոլստոյի անվան № 22
դպրոց, 7-րդ դաս.



ՍԱՐԳԻՍ ԱՄԱՏՈՒՆԻ

# Ալեքսանդրապոլի քաղաքային պատկերներից

Մրգավաճառը որոշակի դադարներով բացականչում էր. «Թութ բադամա՜, դանդ շաքարլամա՜, քելե՜ք, պարպա՜վ, ա՜յ թութը»: Ջրավաճառներից մեկը բղավում էր. «Ջու՜ր առեք, ջու՜ր, իմ գավի սառը ջու՜րը, Օխտն ախպըրանց խանի ջու՜րը», մյուսը, խոսքը նրանից խլելով, շարունակում էր. «... Սառը ջու՜րը, Ջիթողցնց բախչի ջու՜րը»:

Մունետիկներին կոչում էին թալլալ: Մունետիկ ընտրում էին բեռնակիրներից, հաշվի էին առնում նրանց արագաշարժությունն ու ձայնի զորեղությունը: «Մայրիկնե՜ր, քույրիկնե՜ր,— կանչում էին թաղից թաղ անցնելով,— նալիկներդ կոկտան, բաշուջներդ չթչթան, էսօր իրիկուն սհաթը յոթին հավաքվեք Աստվածածնա ժամը պատարագի՜»: Կամ՝ հացթուխն իր թըխած հացը ռեկլամելու նպատակով «թալլալ էր քցում», այսինքն՝ վարձատրում էր թալլալին և պատվիրում գովաբանել իր փռի հացը: Թալլալը նոր թըխած հացերից մեկը վերցնում էր ձեռքը, շրջում քաղաքի մարդաշատ վայրերում, կանգնում փողոցների խաչմերուկներում և զիլ ձայնով կանչում. «Էսօր, էս սհաթիս ձեն կուտամ, քաղքցի՛ք թե քյոլլի գեղացի՛ք, լա՜վ իմացեք, Տայոնց փուռը ծախում են էս ծիլ ու ծաղիկ, ալ ու եշիլ հացը, կիլոն երկու շայի»:

Բայց ինչքան էլ բարձր լինի ազդարարողի ձայնը և լավ ընտրված լինի ազդարարման վայրը, այնուամենայնիվ, մարդու ձայնի շառավիղը մնում է համեմատաբար փոքր: Ուստի կարևոր լուրեր հաղորդելու համար դիմում էին ձայնի հնչեղության ուժն ավելացնող միջոցների՝ կոչնակին ու եկեղեցու զանգերին: Վերջիններիս օգտագործման ժամանակ, առանց խոսքի, որոշակի զարկերից լսողները հասկանում էին, թե ինչ է պահանջվում: Զանգը հնչեցնում էին տարբեր դեպքերի համար տարբեր հաճախականությամբ և տարբեր տոնով: Մահվան բոթ հաղորդելու դեպքում հնչեցնում էին դանդաղ ու հանդիսավորությամբ, թշնամական հարձակման ենթարկվելու դեպքում, տագնապով՝ ինչքան հնարավոր է արագ և բարձրաձայն և այլն:

Սովորական կամ արտակարգ լուրերի հաղորդման պարզագույն, բայց և կարևոր միջոց էր հանդիսանում նաև կից բնակարանների կամ բակերի միջնորմներում բացած առղանցքերը (ակնատ, պատ-

ծակ)։ Մինչև 20-րդ դարի սկիզբները Ալեքսանդրապոլի երկու մեծ թաղամասերի՝ «Գեղացոց մահլի» և «Ջորի բողազի» կամ «Ջորի մահլի» բնակարանների կից պատերին անընդմեջ բացված ակնատների միջոցով քաղաքի այս զանգվածի բնակչությունը վըտանգի դեպքում լուրը արտակարգ արագությամբ հաղորդում էր մյուսներին։ Ընդ որում, «Գեղացոց մահլա» կոչված թաղամասը, բարձրության վրա գտնվելու շնորհիվ, ինքն էր կատարում դիտորդի և ազդարարողի դերը։ Ակնատները լայնորեն օգտագործվում էին նաև առօրյա կյանքում՝ միմյանց ուտելիք, ամանեղեն, մանր իրեր փոխանցելու համար։

Ալեքսանդրապոլում եղել է մասնավոր փոստ (այն գտնվել է այժմյան մանկավարժական ինստիտուտի կուլտուրայի ֆակուլտետի շենքում), որը պատկանել է մեծահարուստ Աբոյովին։ Վերջինս ունեցել է բազմաթիվ կառքեր, որոնցով նրա վարձու կառապանները տարբեր վայրեր են տարել ինչպես մարդկանց, այնպես էլ նամակ, երկտող, ծանրոց և այլն։

Մասնավոր փոստից զատ, կային հատուկենտ անհատ, գերազանցապես աղքատ, չունևոր մարդիկ, որոնք ոտքով տարբեր քաղաքներ ու գյուղեր էին տանում նամակ կամ շտապ լուրեր։ Նրանք օրական կտրում-անցնում էին ավելի քան 80—100 կմ ճանապարհ, իհարկե, օգտըվելով միայն իրենց հայտնի կարճառոտ ճանապարհներից։ Այդ մարդկանց անվանել են սարի։ Եթե մեկնումեկին պետք է եղել շտապ նամակ կամ գրություն ուղարկել որևէ քաղաք կամ գյուղ, պայմանավորվել է սարիի հետ, որ նա նամակը կամ գրությունը տեղ հասցնի պատվիրատուի ուզած ժամանակին և ստանա պայմանավորված չափով վարձ։ Եվ սարին (փոստատար-կապավորը) գիշերցերեկ ոտքով գնացել է, նամակը հասցեատիրոջը հանձնելուց հետո, նրանից ստացական է վերցրել, որի մեջ նշվել է, թե որ օրը և որ ժամին է նամակը տեղ հասել։ Ստացականը առաքողին հանձնելուց հետո, սարին ստացել է պայմանավորված վարձը։ Սարիները ճանապարհ գնալիս ոտքերին հագել են քոժոժավոր զանկապաններ, որպեսզի ճանապարհին հանդիպող մարդիկ (գող, ավազակ, ղաչաղ և այլն), իմանան, որ նա սարի է, նրա մոտ գրությունից բացի ոչինչ չկա, չկասեցնեն նրա ընթացքը։



## ՀԱՅԱՍՏԱՆԸ ԹԱՆԳԱՐԱՆ Է ԲԱՑ ԵՐԿՆՔԻ ՏԱԿ

# ՑԱՂԱՑ ՔԱՐ

Հրաբխային լճեր, կախարդիչ ու վայրի ուրվագծով լեռներ, նրանց չոր ու ամայի ստորոտներում կանաչ օազիսների պես բոցկլտացող շեն ու առատ գյուղեր... Սա Եղեգնաձորն է:

Մաքուր, թափանցիկ կապույտով ներկված բաց երկնքի հետ անհաշտ երկխոսության մեջ մտած բերդեր, խոյեցիների կոշտ ու ախորժալուր բարբառ, սառն ու արագահոս Արփա... Սա Եղեգնաձորն է:

Ավազ դարձած խիճ, խիճ դարձած քար, քար կտրած վանք...

Ներկան ու անցյալը կողք-կողքի, հավերժ անբաժան:

Ներկայիս Եղեգիս գյուղն ու պատմական Եղեգիսն իրարից անջատված են մի աներևույթ հրվանդանով, որը լեռնազանգվածից պոկվել, երկարել ու համարյա հասել է գետին, իսկ գետից այն կողմ՝ ներկայացման ձևավորում հիշեցնող լեռներ են: Բայց, ո՛չ, սա ո՛չ ձևավորում է, ո՛չ էլ վարագույր, որ կարելի է բացել, սա հենց ինքը՝ Եղեգնաձորի բնությունն է, անհավատալի ու անակնկալ:

Հրվանդանը կարծես կքել է ուժից վեր ծանրության տակ, հովազի պես մեջքը կորացրել ու խնդրում է, որ Սմբատաբերդն ազատի իրեն իր ճնշող պարիսպներից: Հրվանդանի անջատման տեղը կարևոր ճամփաբաժան է: Այստեղից արևմտյան ուղղությամբ արահետներն իջնում են Եղեգիս, արևելյան ուղղությամբ՝ Ալայազ կոչվող գյուղը, որ պատմական Եղեգիսի տարածքն է զբաղեցնում, դեպի հարավ՝ ճամփաբաժանի բարձրության վրա Սմբատաբերդն է, իսկ դեպի հյուսիս՝ լեռնազանգվածի թեք հարավային լանջին, Ցաղաց Քար կոչվող համալիրը:

Մոտավորապես նույն հորիզոնականի վրա են համալիրի արևմտյան և համեմատաբար նոր՝ արևելյան հուշարձանախմբերը:

Արևմտյան խմբի հուշարձանները բավական մոտ են միմյանց և, չնայած խիստ ավերված են, այնուամենայնիվ հնարավորություն են տալիս պատկերացնել, թե ճարտարապետական ինչ բարդ ու հետաքրքիր միջավայր են ստեղծել միջնադարի վարպետները երկար ու ձիգ դարերի ընթացքում:

Ի տարբերություն արևմտյան խմբի, արևելյանն իրենից ներկայացնում է 11-րդ դարի, իրարից անջատ կանգնած երկու հուշարձան՝ ս. Կարապետ եկեղեցին և

երկհարկանի դամբարանը։

Հետաքրքիր է, որ ս. Կարապետ եկեղեցու մուտքը ոչ թե արևմտյան կողմից է, ինչպես սովորաբար լինում է մեր եկեղեցիներում, այլ հարավային և այն էլ ոչ թե սովորական մուտք է, այլ մի շքեղ շքամուտք։ Նույն բծախնդրությամբ մշակված են նաև նեղ պատուհանների բավական լայն շրջանակները։ Եկեղեցու հարթ հյուսիսային պատին պահպանվել է ցուլի և առյուծի գոտեմարտ պատկերող մի հրաշալի պատկերաքանդակ։ Զարմանալի է, թե վարպետին ինչպե՞ս է հաջողվել այդչափ կարծր բազալտից կերտել այսպիսի ճկուն ձևեր։ Ցերեկվա ընթացքում միայն հաշված րոպեների է արևը լուսավորում եկեղեցու հյուսիսային պատը։ Ու մենք պահը բաց չենք թողնում։ Հյուսիսային սարալանջին գամված զմայլվում ենք միջնադարյան վարպետի արվեստով։

Ս. Կարապետ եկեղեցուց մի քանի տասնյակ մետր հեռավորության վրա խիստ անսովոր կոմպոզիցիա ունեցող երկհարկանի դամբարան է։ Առաջին հարկի դամբարանի վրա բարձրանում է ավելի փոքր լայնության մատուռը, ուր կարելի է մտնել հյուսիսային թեք լեռնալանջից։ Մատուռն արևմտյան կողմում ավարտվում է մի խուլ կամարախորշով, որի երկու կողմերում զգալի մեծության շքեղ մշակված խաչքարեր են տեղադրված։

Ցաղաց Քարի բարձունքից հիանալի երևում է շրջակայքը։ Ուղիղ մեր դիմաց Սմբատաբերդն է։ Իսկ ճամփաբաժանից դեպի արևելք, ցածում՝ Ալայազը։ Այստեղ նշանավոր Զորաց եկեղեցին է, մեր ճարտարապետության մեջ միակը, որ դահլիճ չունի, ունի միայն բեմ՝ ավագ խորան։ Իսկ դահլիճ եղել է եկեղեցու արևմտյան երեք կամարների առաջ բացվող, արձակ տարածությունը։ Այնտեղ կանգնել է զորքը և ճակատամարտից առաջ վերջին օրհնությունն է ստացել իր հոգևոր առաջնորդներից։

Զորաց եկեղեցու կամարների տակից երևում է Ալայազի մյուս եկեղեցին, որ նույնպես կառուցվել է 13—14-րդ դարերում։ Գյուղի տարածքում կան բազմաթիվ խաչքարեր և խաչքարերի խմբեր։

Իսկ գյուղի դիմաց սարն է։ Նրա ձյունոտ գագաթը խառնվել է սպիտակ ամպի հետ ու թվում է ոչ թե ձյուն, այլ ամպ է նստել լեռան գագաթին։

**ՆՈՒՆՈՒՖԱՐ ՄԻՆԱՍՅԱՆ**

ճարտարապետ






Հայոց տոմարի 9-րդ ամիսն է, տևել է ապրիլի 8-ից մայիսի 7-ը։

Անանիա Շիրակացու վկայությամբ այս ամիսը հնում կոչվելիս է եղել Հարավանց։ Ըստ Շիրակացու, Հարավանց անունը ծագում է տարվա այդ եղանակին տարածված աշխատանքի բնույթից։

Ղևոնդ Ալիշանը (1820—1901) նշում է, որ միջնադարի որոշ մտածողների կարծիքով այս ամսանունը կոչվել է նաև «Հարուանց», որը խոտ հարել (խոտ քաղել) է նշանակում։ Ըստ Քերովբե Պատկանյանի (1833—1889), Ահեկան ամսվա անունը կապված է հուր և կրակ նշանակող բառերի հետ։ Գրիգոր Տաթևացու (1346—1409) կարծիքով Ահկին Հայկ Նահապետի երեք դուստրերից մեկի անունն էր։

ՀԱՅԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ

# ԲԱՌ ԶԱՐՄԱՑՆՈՂ ԶԻՆՎՈՐ Է

ԱՄ
ԱՄԱՆՈՐ
ՆԱՎԱՍԱՐԴ
ՔԵՐԹՎԱԾՔ
ԾԱՆ

Նոր տարվա նախօրեին ուսուցիչը դիմեց աշակերտներին.

— Եկեք ալբոմ պատրաստենք դպրոցի համար և այնտեղ գրի առնենք Նոր տարվա առիթով ժողովրդական մաղթանքները խաղաղասիրության վերաբերյալ: Դիմեք տնեցիներին, ձեր ազգականներին ու բարեկամներին և տեղեկացեք, թե նման ինչ մաղթանքներ գիտեն նրանք: Գուցե այդպիսի մաղթանքների հանդիպեք ձեր ընթերցած գրքերում: Դրանք մենք կարող ենք ուղարկել աշխարհի տարբեր կողմերում ապրող դպրոցականներին և նրանցից էլ ստանալ նույնատիպ մաղթանքներ:

Ամենքը համաձայնեցին և գործի անցան: Մի քանի օր հետո աշակերտները ուսուցչին ներկայացրին առաջին գրառումները:

Ուսուցչին ամենից շատ դուր եկան հետևյալ երկու մաղթանքները.

**Մաղթենք, որ Ամանորը խաղաղառատ, բերքառատ ու լուսառատ լինի և անկատար չըթողնի ոչ մեկի բարի ցանկությունը:**

**Բարի խոսքով պիտի սկսել Նոր տարին, որպեսզի բոլոր շարունակությունները բարի լինեն:**

Բայց ուսուցիչը կշտամբանքի խոսք ասաց նրան, ով Ամանորը գրել էր երկու (ամանօր), իսկ Նոր տարին՝ մեկ (նոր տարի) տառասխալներով:

— Տառասխալը նման է նոր կարված շքեղ հագուստին կպած ցեխի.— ասաց ուսուցիչը:

Եկեք մենք էլ մեր դասն սկսենք այդ տառասխալներից: **Նոր տարի** և **Ամանոր** բառերը գրվում են մեծատառով: Աշակերտը սխալվել է և Ամանոր բառի մեջ **ո** տառի փոխարեն գրել է օ, կարծելով, թե դա կապ ունի **օր** բառի հետ: Հապա վերլուծենք Ամանոր բարդ բառը: Այն կազմված է **ամ-ա-նոր** մասերից: **Ամ** նշանակում է տարի, **ա**-ն հոդակապ է, **նոր**ն էլ ձեզ ծանոթ նոր բառն է: Այսպիսով՝ Ամանոր նշանակում է նոր տարի: Մեր նախնիները մի քանի անուններ են տվել Նոր տարվան. **Ամանոր, Նոր տարի, Նավասարդ, տարեգլուխ** և այլն: Այս չորս անունների մեջ ձեզ անծանոթը **Նավասարդն** է: Բառացի այն ևս նշանակում է Նոր տարի.

նավ (նոր) **ա-սարդ (տարի)**— Նոր տարի: Ավելացնենք, որ **սարդ** արմատը պահպանվել է **երիտասարդ** (չափահաս) և **ավսարդ** (պառավ կին) **բառերի մեջ**: Սա չպետք է շփոթել **մյուս սարդ** (հատվածոտանի կենդանի) բառի հետ: Նման բոլոր բառերը չեն, որ նույն իմաստն ունեն:

Բայց չկարծեք, թե **ամը** Ամանոր բառի սեփականությունն է:

Հայերենն **ամ** արմատով կազմված շատ բառեր ունի: Նախապես ասենք, որ **ամ** նշանակում է ոչ միայն **տարի**, այլև **տարիք**: Ահավասիկ: **Զառամյալ** (խիստ ծեր) բառի միջնամասի **ամ** արմատը տարիք է նշանակում:

**Ամ** արմատից է կազմված նաև **ամիկ** բառը, որ նշանակում է մի տարեկան արու ուլ:

Հայերենի հնամենի բառերից է **գիրը**, որ նշանակում է տառ, գրվածք, գրություն, նամակ, գիրք, մատյան: Մշակույթի հետ կապված որևէ **միտք** արտահայտելու համար **գիրը** համապարփակ հասկացության դեր է կատարում: Այդ տեսակետից գիրը հայերենի հզոր բառերից է: Եկեք ծանոթանանք նրա իմաստային «դերակատարումներին»: Մեսրոպ Մաշտոցը հայերեն այբուբենը ստեղծել է 405 թվականին: Մաշտոցյան այբուբենը պարունակում է 36 տառ) մնացած երեքը հետագայում են ավելացվել): Աշխարհահռչակ լեզվաբան Անտուան Մեյեն մեր այբուբենի մասին այսպես է գրել. «Ամենքին հայտնի է, որ հայերեն այբուբենի համակարգը գլուխգործոց է: Հայերենի հնչյունական համակարգի ամեն մի հնչույթ նշված է հատուկ տառանշանով, և համակարգը այնքան լավ է հաստատված, որ այն հայ ազգին տվել է հնչյունական համակարգի վերջնական արտահայտություն, մի արտահայտություն, որ մինչև օրս պահպանվել է առանց որևէ փոփոխություն կրելու, առանց բարելավման կարիք զգալու, որովհետև այն սկզբից ևեթ կատարյալ էր»: **Այբուբեն** կամ **տառ** ասելու փոխարեն մենք հաճախ գործածում ենք **գիրը**: Այսպես. ասում ենք՝ Մեսրոպ Մաշտոցն ստեղծեց հայերեն գրերը: Կամ՝ մաշտոցյան գրերը ամենահզոր զենքն են եղել հայ ժողովրդի ազգային ինքնությունը պահելու համար: Այս նախադասություններում արտահայտված են ոչ միայն **տառ** ու **այբուբեն** իմաստները, այլև ընդհանրապես գրավոր խոսք հասկացությունը:

**Գիր** արմատից են կազմված հետևյալ բառերը. **գրել, գրիչ, վերագրել, գրաձև, արագագիր, մեքենագիր, վարազագիր, անգիր, ձեռագիր, երկաթագիր, զարդագիր, տարեգիր, սեպագիր, ամսագիր, բնեռագիր, թղթագիր, տպագիր, վավերագիր, աղագրություն, գրասենյակ, գրավաճառ** և այլն: **Գիր** բառն ընդարձակել է այս և նմանատիպ տասնյակ ու տասնյակ բառերի իմաստային սահմանները:

Հնում գրիչ է կոչվել այն մարդը, ով ձեռագիր է ընդօրինակել, այսինքն՝ արտագրել է պատրաստի տեքստը: Այժմ գրիչ է կոչվում թանաքով գրելու սարքը: **Գրագետ** են կոչում գրել-կարդալ իմացող մարդուն, իսկ արևմտահայերենում՝ գրագետ ասելով հասկացվում է նաև գրող (գրող-արվեստագետ):

**Գիր** բառն ստուգաբանում են այսպես. **քերթել, քերել**, այսինքն՝ **գրել**: Մեր հները տառերը փորագրել են քարերի վրա, դրա համար էլ այդ արարողությունը կոչել են **քերել**: Միաժամանակ գրել են մագաղաթի (խաղախորդած կաշի) վրա: Նրանք ողորկ կաշին քերթել են և տառեր պատկերել, որի համար էլ արարողությունը կոչվել է **քերթել** կամ **քերել**: Այստեղից է առաջացել **քերթող** բառը, որ նշանակում է **բանաստեղծ, քերական, քերականագետ**: **Քերթված** բառն էլ նշանակում է գրվածք, ստեղծագործություն: Հայ ամենամեծ պատմիչ Մովսես Խորենացուն տվել են **Քերթողահայր** և **Պատմահայր** տիտղոսները: **Պատմահայր** նշանակում է պատմության հայր, այսինքն ամենամեծ պատմաբանը, պատմության ամենամեծ գիտակը: Հույներն այդպիսի տիտղոս են տվել պատմիչ Հերոդոտին: Բայց մեր նախնիները չեն բավարարվել Պատմահայր տիտղոսով և Մովսես Խորենացուն անվանել են նաև Քերթողահայր: Այս բառի առաջին մասը բազմիմաստ է: Այս կապակցության մեջ **քերթող** նշանակում է և՛ բանաստեղծ (նաև ընդհանրապես գրող), և պատմի՛չ, և՛ քերական (ընդհանրապես՝ գիտնական), և՛ գրիչ: Այսպիսով **քերթողահայր** նշանակում է մեծ պատմիչ ու գիտնականների, պատմիչների, գրիչների հայր:

Հիմա դառնանք **ծան** արմատին: **Ծան** նշանակում է **ճանաչել**: Հրաչյա Աճառյանը հանգամանորեն ստուգաբանել է այս բառը, սրա հետ կապված փոփոխություններն ու սրանով կազմված բառերը:

**Ծանուցանել** նշանակում է իմաց տալ, հայտարարել, **ծանոթ**՝ ճանաչված, նաև գիտակ, տեղյակ (օրինակ, ծանոթ մարդ, ծանոթ վայրեր, ծանոթ թեմա և այլն), **ծանիր**՝ ճանաչիր, **վերծանել**՝ անծանոթ բանը մեկնել, բացատրել: Աճառյանը հավաստում է, որ **ճանաչել** բառն էլ վերափոխված **ծանաչել** բառն է: **Ծանաչել** բառի նախաձայն **ծ-ն** ազդվելով **չ-ից** վերածվել է **ճ-ի**, և **ծանաչելը** դարձել է **ճանաչել**:

## ԼԵՆԻՆԱԿԱՆՑԱՆ ԿԱՏԱԿՆԵՐ





Մի լենինականցի տեսնում է ծանոթ մեկին, որը մի փոքր փքված տեսք ուներ և ոտից գլուխ սպիտակ էր հագած, ասում է.

— Մե հաղըմ կապույտ գլխարկ էլ դնեիր, կնմանվեիր մածնի շշի։

Հայկանուշ մամը ուսումնական հարս էր ուզել։ Հետաքրքրվելով, թե հարսը որտե՞ղ է սովորում, ի՞նչ մասնագիտությամբ է հետագայում աշխատելու, Հայկանուշ մամը հարցնում է.

— Բալա՛ ջան, ի՞նչ գործ դի էնես, օր վերջացուցիր։

Հարսը թե.

— Մայրի՛կ, իրավաբան եմ, դատավոր պիտի դառնամ։

Հայկանուշ մամը, ծնկին խփելով.

— Վու՛յ, քոռանա՛մ ես, մարդ էլ զոռով դատարանը իր տունը բերե։

Երկու լենինականցի հարս իրար հետ խոսում են, բողոքում անվերջ գործերից։ Մեկը թե.

— Օ՛ֆ, հոգնել եմ, հեչ բան որ չլինի, կեսարս ամեն օր գլուխն է լվալ տալիս՝ ջուր լից, հա ջուր լից գլխիս...

Մյուսը թե.

— Չէ՛, ես հեշտ եմ պրծել, կեսարիս գլխին մազ չկա, մենակ թոզերը կառնեմ...

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց № 15։
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96, 56-43-38։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.







● Նվարդ տատը սուրճի բաժակն է նայել տալիս։
— «Հ» տառ կա,— ասում են։
— Ո՛չ, մեռնի՛մ արևուն, հրոզս է...— ասում է։

● Ավտոբուսը լեփ-լեցուն էր, ասեղ գցելու տեղ չկար, մարդիկ անխղճորեն իրար էին սեղմում։
— Վա՛յ, կրծքավանդակս ջարդեցիք, մի քիչ տե՛ղ արեք, շնչեմ,— բողոքեց մեկը։
Հետևից մրթմրթացին.
— Պա՛հ, քեզ տեղ ես արել, հիմա էլ վանդակիդ մասի՞ն ես մտածում...

● Մեծախոս մեկը մտնում է քաղաք, նայում է չորս բոլորը ու թե.
— Էս ի՞նչ բան է, մարդ չկա էստեղ, աջ եմ նայում՝ ավանակի եմ հանդիպում, ձախ եմ նայում՝ ավանակներ են կանգնած, դիմացից, ետևից հա ավանակներ են գալիս... Սա ի՞նչ բան է։
Լենինականցի Ջղեր Խաչիկը թե.
— Չէ՛, աչքերդ չեն ջոկում, չորս բոլորդ հայելիներ են դրված, դու քու պատկերքդ ես տեսնում, ներող կեղնիս...

● — Մուկո՛չ, ի՞նչ կարծիքի ես, է՛ս աշխարքն է լավ, թե է՞ն աշխարքը։
— Ինիգ։
— Ընչի՞, Մուկո՛չ ախպեր։
— Ինիգ օր գեշ էղներ, գնացողները մեզը ետ գուքար։

● Մի անգամ լենինականցուն հարցրին.
— Հորեղբա՛յր, որտեղացի՞ եք։
— Տո՛, խամ հարց կուտաք, տղամարդը ուրիշ էլ որտե՞ղից կեղնի։

Հավաքել և խմբագրությանն են տրամադրել Լենինականի մանկական պատկերասրահի աշխատակցուհիներ՝
ՏԱՆՅԱ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԸ,
ԱՆԱՀԻՏ ԲԱՀԱՐՅԱՆԸ և
ԿԻՄԱ ՄԿՐՏՉՅԱՆԸ

Հանձնված է տպագրության 22.06.1984 թ.։ Ստորագրված է տպագրության 5.09.1984 թ.։ ՎՖ 11909։ Թուղթ օֆսեթ, 70×100 1/16։ Տառատեսակ՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 64052։ Պատ. 1503։ Գինը՝ 15 կ.։
Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում. Օրջոնիկիձեի պողոտա 2։

Сдано в набор 22.06.1984 г. Подписано к печати 5.09.1984 г. Формат 70×100 1/16. ВФ 11909. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать, 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 64052. Заказ 1503. Цена 15 коп.
Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ. ԻՆԴԵՔՍ՝ 77806



ՀԱԿՈԲ ԱՆԱՆԻԿՅԱՆ (1919—1977 թթ.) «Փռնչի Սիմոնը» 1973 թ.